Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի

# ԲԼՈԿՆՈՏ



№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*


# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՃԱՌԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

(ԱՄԲԻՈՆԻ ՎՐԱ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ԵՐԵՎԱԼԸ ԴԵԼԵԳԱՏՆԵՐԸ ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ԵՆ ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՉԼՌՈՂ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ, ՈՐՈՆՔ ՎԵՐԱԾՎՈՒՄ ԵՆ ՕՎԱՑԻԱՅԻ: ԲՈԼՈՐԸ ՈՏՔԻ ԵՆ ԿԱՆԳՆՈՒՄ: ԲԱՑԱԿԱՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐ. «ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ ՈՒՌԱ՜», «ԿԵՑՑԵ՛ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ», «ՓԱ՛ՌՔ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ»):

Ընկերնե՛ր:

Թույլ տվեք մեր համագումարի անունից բոլոր այն եղբայրական պարտիաներին ու խմբերին, որոնց ներկայացուցիչները հարգեցին մեր համագումարը իրենց ներկայությամբ կամ որոնք համագումարին ուղարկեցին ողջույնի ուղերձներ, շնորհակալություն հայտնել բարեկամական ողջույնների, հաջողությունների ցանկությունների, վստահության համար: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ՈՐՈՆՔ ՎԵՐԱԾՎՈՒՄ ԵՆ ՕՎԱՑԻԱՅԻ):

Մեզ համար առանձնապես թանկ է այդ վստահությունը, որ նշանակում է պատրաստակամություն՝ աջակցելու մեր պարտիային ժողովուրդների պայծառ ապագայի համար նրա պայքարում, պատերազմի դեմ նրա պայքարում, խաղաղության պահպանման համար նրա պայքարում: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Սխալ կլիներ կարծել, թե մեր պարտիան, որը հզոր ուժ է դարձել, այլևս աջակցության կարիք չունի: Դա ճիշտ չէ: Մեր պարտիան և մեր երկիրը միշտ զգացել են ու կզգան արտասահմանյան եղբայրական ժողովուրդների վստահության, համակրանքի և աջակցության կարիքը:

Այդ աջակցության առանձնահատկությունն այն է, որ եղբայրական ամեն մի պարտիայի կողմից մեր պարտիայի խաղաղասիրական ձգտումներին ցույց տրվող ամեն տեսակ աջակցությունը դրա հետ միասին նշանակում է աջակցություն իր սեփական ժողովրդին՝ խաղաղության պահպանման համար նրա պայքարում: Երբ անգլիական բանվորները 1918—1919 թվականներին, Սովետական Միության վրա անգլիական բուրժուազիայի զինված հարձակման ժամանակ, պատերազմի դեմ պայքար կազմակերպեցին «Ձեռքերդ



հեռո՛ւ Ռուսաստանից» լոզունգով, ապա դա աջակցություն էր, աջակցություն ամենից առաջ խաղաղության համար իր ժողովրդի պայքարին, իսկ ապա նաև՝ աջակցություն Սովետական Միությանը: Երբ ընկեր Թորեզը կամ ընկեր Տոլյատտին հայտարարում են, որ իրենց ժողովուրդները չեն պատերազմի Սովետական Միության ժողովուրդների դեմ (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ), ապա դա

աջակցություն է, ամենից առաջ աջակցություն Ֆրանսիայի և Իտալիայի բանվորներին ու գյուղացիներին, որոնք պայքարում են խաղաղության համար, իսկ ապա նաև՝ աջակցություն Սովետական Միության խաղաղասիրական ձգտումներին: Փոխադարձ աջակցության այդ առանձնահատկությունը բացատրվում է նրանով, որ մեր պարտիայի շահերը ոչ միայն չեն հակասում, այլ, ընդհակառակը, միաձուլվում են խաղաղասեր ժողովուրդների շահերին: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Իսկ ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նրա շահերը առհասարակ անբաժանելի են ամբողջ աշխարհի խաղաղության գործից:

Հասկանալի է, որ մեր պարտիան չի կարող պարտք մնալ եղբայրական պարտիաներին և նա ինքն էլ իր հերթին պետք է

աջակցություն ցույց տա նրանց, ինչպես նաև նրանց ժողովուրդներին՝ ազատագրության համար նրանց պայքարում, խաղաղության պահպանման համար նրանց պայքարում: Ինչպես հայտնի է, նա հենց այդպես էլ վարվում է: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): 1917 թվականին մեր պարտիայի կողմից իշխանությունը վերցնելուց հետո և այն բանից հետո, երբ պարտիան ռեալ միջոցներ ձեռնարկեց կապիտալիստական ու կալվածատիրական ճնշումը լիկվիդացնելու համար, եղբայրական պարտիաների ներկայացուցիչները, մեր պարտիայի խիզախությամբ ու հաջողություններով հիացած, նրան շնորհեցին համաշխարհային ռևոլյուցիոն ու բանվորական շարժման «Հարվածային բրիգադայի» կոչումը: Դրանով նրանք հույս էին հայտնում, որ «Հարվածային բրիգադայի» հաջողությունները կթեթևացնեն կապիտալիզմի ճնշման տակ հեծող ժողովուրդների դրությունը: Ես կարծում եմ, որ մեր պարտիան արդարացրեց այդ հույսերը, հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանում, երբ Սովետական Միությունը, ջախջախելով գերմանական ու ճապոնական ֆաշիստական բռնակալությունը, Եվրոպա-



յի և Ասիայի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկության սպառնալիքից: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Իհարկե, շատ դժվար էր կատարել այդ պատվավոր դերը, քանի դեռ «Հարվածային բրիգադան» միակն էր և քանի դեռ նա հարկադրված էր այդ առաջավոր դերը կատարել գրեթե միայնակ: Բայց այդպես եղե՛լ է: Այժմ դրությունը միանգամայն այլ է: Այժմ, երբ Չինաստանից ու Կորեայից մինչև Չեխոսլովակիա ու Հունգարիա երևան են եկել նոր «Հարվածային բրիգադաներ» ի դեմս ժողովրդա-դեմոկրատական երկրների,— այժմ մեր պարտիայի համար ավելի է հեշտացել պայքարելը, և գործն էլ ավելի լավ է գնում: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Առանձնահատուկ ուշադրության են արժանի կոմունիստական, դեմոկրատական կամ բանվորա-գյուղացիական այն պարտիաները, որոնք դեռևս իշխանության գլուխ չեն անցել և որոնք շարունակում են աշխատել բուրժուական դրակոնական օրենքների կրնկի տակ: Իհարկե, նրանց համար ավելի դժվար է աշխատել: Սակայն նրանց համար աշխատելն այնքան դժվար չէ, որքան դժվար էր մեզ՝ ռուսական կո-

մունիստներիս համար, ցարիզմի ժամանակաշրջանում, երբ ամենափոքր առաջընթացը համարվում էր ծանրագույն հանցագործություն: Սակայն ռուսական կոմունիստները անսասան մնացին, չվախեցան դժվարություններից և հասան հաղթանակի: Նույնը կկատարվի այդ պարտիաների հետ:

Այնուամենայնիվ ինչո՞ւ այդ պարտիաների համար այնքան դժվար չի լինի աշխատել՝ համեմատած ցարական ժամանակաշրջանի ռուսական կոմունիստների հետ:

Նախ, որովհետև նրանք աչքի առջև ունեն պայքարի ու հաջողությունների այնպիսի օրինակներ, որպիսիք կան Սովետական Միությունում և ժողովրդա-դեմոկրատական երկրներում: Հետևապես, նրանք կարող են սովորել՝ ելնելով այդ երկրների սխալներից ու հաջողություններից և դրանով հեշտացնել իրենց աշխատանքը:

Երկրորդ, որովհետև ինքը բուրժուազիան՝ ազատագրական շարժման գլխավոր թշնամին, այլ է դարձել, լուրջ կերպով փոխվել է՝ դարձել ավելի ռեակցիոն, կորցրել է կապերը ժողովրդի հետ և այդպիսով թուլացրել իրեն: Հասկանալի է, որ այդ հանգամանքը նույնպես պետք է հեշտացնի ռևո-



լյուցիոն ու դեմոկրատական պարտիաների աշխատանքը: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Առաջ բուրժուազիան իրեն թույլ էր տալիս լիբերալություն անել, պաշտպանում էր բուրժուա-դեմոկրատական ազատությունները և դրանով իր համար մասսայականություն էր ստեղծում ժողովրդի մեջ: Այժմ լիբերալիզմից հետք անգամ չի մնացել: Այլևս չկա այսպես կոչված «անձի ազատությունը»,— անձի իրավունքները այժմ ճանաչվում են միայն նրանց համար, ովքեր կապիտալ ունեն, իսկ մյուս բոլոր քաղաքացիները համարվում են մարդկային հում նյութ, որը պիտանի է լոկ շահագործման համար: Ոտնակոխ է արված մարդկանց և ազգերի իրավահավասարության սկզբունքը, այն փոխարինված է շահագործող փոքրամասնության լիիրավության և քաղաքացիների շահագործվող մեծամասնության իրավազրկության սկզբունքով: Բուրժուա-դեմոկրատական ազատությունների դրոշը դեն է շպրտված: Ես կարծում եմ, որ այդ դրոշը պետք է բարձրացնեք դուք, կոմունիստական և դեմոկրատական պարտիաների ներկայացուցիչներդ, և այն առաջ տանեք, եթե ուզում եք ձեր շուրջը հավաքել ժողովրդի

մեծամասնությունը: Այն բարձրացնող մեկ ուրիշը չկա: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Առաջ բուրժուազիան համարվում էր ազգի պարագլուխը, նա պաշտպանում էր ազգի իրավունքներն ու անկախությունը, դրանք դասելով «ամեն ինչից վեր»: Այժմ «ազգային սկզբունքից» հետք անգամ չի մնացել: Այժմ բուրժուազիան դոլարով վաճառում է ազգի իրավունքներն ու անկախությունը: Ազգային անկախության և ազգային սուվերենության դրոշը դեն է շպրտված: Կասկած չկա, որ այդ դրոշը պետք է բարձրացնեք դուք, կոմունիստական ու դեմոկրատական պարտիաների ներկայացուցիչներդ, և այն առաջ տանեք, եթե ուզում եք լինել ձեր երկրի հայրենասերները, եթե ուզում եք դառնալ ազգի ղեկավար ուժը: Այն բարձրացնող մեկ ուրիշը չկա: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Բանն այսպես է ներկայումս:

Հասկանալի է, որ այս բոլոր հանգամանքները պետք է հեշտացնեն դեռևս իշխանության գլուխ չանցած կոմունիստական ու դեմոկրատական պարտիաների աշխատանքը:

Հետևապես, կան բոլոր հիմքերը՝ հույս



դնելու եղբայրական պարտիաների հաջողությունների ու հաղթանակի վրա կապիտալի տիրապետության երկրներում: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ն մեր եղբայրական պարտիաները: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թող ապրե՛ն ու կեցցե՛ն եղբայրական պարտիաների ղեկավարները: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ խաղաղությունը ժողովուրդների միջև: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կորչե՛ն պատերազմի հրձիգները: (ԲՈԼՈՐԸ ՈՏՔԻ ԵՆ ԿԱՆԳՆՈՒՄ: ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱԺԱՄԱՆԱԿ ՉԼՌՈՂ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ՈՐՈՆՔ ՎԵՐԱԾՎՈՒՄ ԵՆ ՕՎԱՑԻԱՅԻ: ԲԱՑԱԿԱՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐ՝ «ԿԵՑՑԵ՛ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ», «ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ ՈՒՌԱ՛», «ԿԵՑՑԵ՛ ԱՇԽԱՐՀԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ», «ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ ՈՒՌԱ՛», «ԿԵՑՑԵ՛ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻՋԵՎ»: «ՈՒՌԱ՛» ԲԱՑԱԿԱՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

---

## ԽՈՐԸ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼ ԵՎ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

*Լենինի—Ստալինի պարտիայի 19-րդ համագումարի որոշումները, համագումարում ընկեր Ստալինի արտասանած պատմական ճառը հսկայական ոգևորություն են առաջ բերել մեր երկրի աշխատավորության մեջ և լայն արձագանք գտել արտասահմանյան երկրներում։*

*Պարտիայի 19-րդ համագումարի որոշումները համաշխարհային պատմական նշանակություն ունեն։ Այդ որոշումները մեր հայրենիքի առջև բաց են անում զարգացման հոյակապ հեռանկարներ, նշում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր, հետագա վերելքի և այդ հիմքի վրա սովետական ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բուռն աճման ուղիները, սովետական մարդկանց ոգեշնչում են*



*կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում, նրանց զինում են իրենց գործի հաղթանակի նկատմամբ անհողդող հավատով։*

*Պարտիայի 19-րդ համագումարի որոշումների անշեղ կենսագործման կարևորագույն պայմանն է հանդիսանում համագումարի կողմից առաջադրված խնդիրները բացատրական քաղաքական-մասսայական ամենօրյա աշխատանքի միջոցով աշխատավորական մասսաներին պարզաբանելը և նրանց ուժերը մոբիլիզացիայի ենթարկելը՝ այդ խնդիրները անթերի կենսագործելու համար։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի նյութերը աշխատավորության մեջ լայնորեն մասսայականացնելու և պարզաբանելու համար մեծ ու պատասխանատու խնդիր է դրվում ինչպես պարտիական կազմակերպությունների, այնպես էլ բոլոր ագիտկոլեկտիվների և ագիտատորների առաջ։*

*Ագիտատորների խնդիրն է՝ բացատրական լայն աշխատանք ծավալել համագումարի նյութերի շուրջը, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ճյուղում աշխատող ա-*

մեն մի կոմունիստի, կոմերիտականի և անպարտիականի գիտակցությանը հասցնելով նրա դերը համագումարի որոշումների իրականացման գործում, որպեսզի յուրաքանչյուր բանվոր, կոլտնտեսական ու ծառայող հասկանա, թե կոնկրետ ի՞նչ է պահանջվում իրենից և ինչ պետք է անի ինքը համագումարի որոշումների կենսագործման համար։ Ըստ որում պարտիայի 19-րդ համագումարի որոշումների շուրջը կատարվող քաղաքական-բացատրական աշխատանքը չպետք է ժամանակավոր բնույթ կրի, այլ այն պետք է ծավալել սիստեմատիկաբար, բազմակողմանի, գաղափարապես բարձր հագեցված և նպատակասլաց, կապելով տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկի, ուսումնական հաստատության առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ։

Պարտիայի 19-րդ համագումարը սոցիալիստական արդյունաբերության աշխատողների առաջ խնդիր դրեց՝ է՛լ ավելի համառորեն պայքարել արտադրական պլանների կատարման ու գերակատարման համար, ամեն կերպ բարձրացնել արտադրության տեխնիկական կուլտուրան, արմատավորել նորագույն սարքավորումները, ապահովել



արտադրության պրոցեսների հետագա մեխանիզացիան ու տեխնոլոգիայի կատարելագործումը, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության անշեղ աճումն ու թողարկվող արտադրանքի որակի բարելավումը, սիստեմատիկաբար բարձրացնել արտադրության տեմպերն ու մակարդակը։

Յուրաքանչյուր ձեռնարկության, հիմնարկի ագիտատոր պետք է խորը կերպով թափանցի ձեռնարկության գործերի մեջ, բազմակողմանիորեն ուսումնասիրի և պարզի, թե ինչպիսի խնդիրներ է դնում համագումարը տվյալ կազմակերպության, արտադրության ճյուղի առաջ, ինչպիսի չօգտագործված ռեզերվներ ու հնարավորություններ կան, ճշմարիտ խոսքով օգնի աշխատավորական մասսաներին ըմբռնելու իրենց խնդիրները և մոբիլիզացիայի ենթարկել նրանց ուժերը համագումարի որոշումները անթերի կատարելու համար։

Համագումարի նյութերի ուսումնասիրությունը մեծ ոգևորություն է առաջ բերել. օրինակ՝ Երևանի Կիրովի անվան գործարանի, Էլեկտրամեքենաշինական, «Ավտոդետալ» գործարանների բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների մեջ։ Նրանք

պարտավորություն են վերցրել ժամկետից շուտ կատարել արտադրական պլանները, ավելի շատ ու բարձրորակ արտադրանք տալ հայրենիքին։

Գյուղատնտեսության ասպարեզում գլխավոր խնդիրն է՝ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացումը, հանրային անասունների գլխաքանակի հետագա ավելացումը՝ նրա մթերատվության զգալի աճի հետ մեկտեղ, հողագործության ու անասնապահության համախառն ու ապրանքային արտադրանքի ավելացումը, կոլտնտեսությունների տնտեսական-կազմակերպական հետագա ամրացումը։

Գյուղատնտեսության բնագավառում պարտիայի 19-րդ համագումարի կողմից առաջադրված խնդիրների լրիվ կենսագործումն ապահովող անհրաժեշտ պայման է հանդիսանում քաղաքական-մասսայական աշխատանքի լայն ծավալումը գյուղում, պայքարը գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության անշեղ կենսագործման, կոլտնտեսություններում աշխատանքը ճիշտ կազմակերպելու, կոլեկտիվ տնտեսությունները տնտեսապես և կազմակերպչորեն ամրապնդելու համար։



Պարտիայի 19-րդ համագումարի նյութերը մասսայականացնելու ուղղությամբ օրինակելի աշխատանք են կատարում Ստեփանավանի, Նոր-Բայազետի, Իջևանի ագիտատորները։ Աշտարակի շրջանի ավելի քան 450 ագիտատորներ շրջանի կոլտնտեսություններում և արտադրական ձեռնարկություններում զրույցներ են անցկացնում նվիրված համագումարի արդյունքներին։

Ագիտատորների խնդիրն է՝ ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանքի միջոցով մոբիլիզացնել կոլտնտեսականների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների բոլոր ուժերը գյուղատնտեսության վերելքի կարևորագույն խնդիրը հաջողությամբ կատարելու համար։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ տնտեսական ընդհանուր վերելքի համար անհրաժեշտ է, որպեսզի արտադրության նոր կազմակերպման փորձը դառնա մասսաների սեփականությունը։ Ուստի ագիտատորի առաջնակարգ խնդիրն է ընդհանրացնել առաջավորների հարուստ փորձը, տեսնել այն նորը, որ ծնվում է ժողովրդի ստեղծագործական նախաձեռնությամբ, կարողանալ իմաստավորել այդ նորը և տարածել, արմատավորել առաջավորների փորձը, սովորեց-

նել ու դաստիարակել աշխատավորական լայն մասսաներին այդ կոնկրետ օրինակներով։

Ագիտատորը պետք է առաջավորներին ներկայացնի ոչ թե ընդհանրապես, ընդհանուր խոսքեր ասելով նրա մասին, այլ պետք է պատմի նրա կոնկրետ աշխատանքի մեթոդների մասին, պետք է ցույց տա, թե ո՞րն է նրա աշխատանքում յուրահատուկը, նորը, առաջադիմականը, ցույց տա համոզիչ կերպով, փաստերով։

Ագիտատորները արտադրության ու կոլտնտեսության առաջավորների աշխատանքի փորձի մասսայականացումը կազմակերպելով, իրենց ուշադրությունը պետք է կենտրոնացնեն այն ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, բրիգադաների, տեղամասերի վրա, որոնք ետ են մնում և չեն կատարում սահմանված պարտավորությունները։

Քաղաքական-մասսայական աշխատանքի հմուտ կազմակերպումով հարկավոր է ապահովել, որպեսզի ետ մնացող բոլոր կոլեկտիվները հասնեն առաջավորների մակարդակին, կատարեն պլանները և սահմանված պարտավորությունները։

Ագիտացիոն մասսայական աշխատանքը



ամբողջովին պետք է ուղղել մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկները և հին կարգերից մնացած նախապաշարմունքները լիկվիդացնելու համար։

Քաղաքական-մասսայական աշխատանքի հմուտ կազմակերպումով անհրաժեշտ է մասսաների մեջ զարգացնել հասարակական պարտականության բարձր գիտակցությունը, աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով, պետության շահերի նկատմամբ հոգատարության ոգով, կատարելագործել սովետական մարդկանց լավագույն հատկությունները՝ վստահություն մեր գործի հաղթանակի նկատմամբ, ամեն տեսակ դժվարություններ հաղթահարելու պատրաստակամություն և կարողություն։

Պարտիայի 19-րդ համագումարի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության ընթացքում ռեսպուբլիկայի աշխատավորները ցուցաբերեցին իրենց պատրաստակամությունը պարտիայի և կառավարության առաջադրանքները կատարելու և գերակատարելու գործում։

Այժմ ռեսպուբլիկայի արդյունաբերության

և գյուղատնտեսության բոլոր ձեռնարկություններում ծավալվում է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցություն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 35-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու համար։

Ագիտատորի առաջնահերթ խնդիրն է պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ամրապնդելով պարտիայի 19-րդ համագումարի պատվին ծավալված մրցության ընթացքում ձեռք բերված արտադրական հաջողությունները՝ մասսաների աշխատանքային խանդավառությունը, նրանց ջանքերն ու ստեղծագործական եռանդը ուղղել Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի կողմից առաջադրված տնտեսական և քաղաքական խնդիրների, կոմունիզմի կառուցման մեծ ծրագրի իրականացման նպատակին։

---

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

## ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄ ԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմական 19-րդ համագումարը դիմավորեց արտադրական խոշոր հաջողություններով։ 1952 թ. հոկտեմբերի 5-ին գործարանը արդեն կատարել էր 11 ամսվա պլանը։

Գործարանում մեծ համբավ են վայելում ստախանովական բանվորները, որոնց աշխատանքային խանդավառությունը օրինակ է հանդիսանում ամբողջ կոլեկտիվի համար։

Ստախանովականներից Ց. Տոնապետյանը, Ն. Սողոմոնյանը, Ս. Ադամյանը, Ա. Գալստյանը, Դ. Աբրամովը և ուրիշները տարեկան պլանը կատարել են 180—250 տոկոսով։

Գործարանի կոլեկտիվը պատվով կատարելով ի պատիվ համագումարի սոցիալիստական մրցությամբ ստանձնած իր պարտավորությունները, պայքարում է Հոկտեմ-

բերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 35-րդ տարեդարձը՝ աշխատավորների մեծ տոնը արժանավայել դիմավորելու համար։

Այս պատմական օրերին գործարանի կոլեկտիվը մեծագույն ուշադրությամբ հետևում էր պարտիայի 19-րդ համագումարի աշխատանքների ընթացքին։ Գործարանի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, ծառայողները ուսումնասիրելով համագումարի ընդունած որոշումները և ընկեր Ստալինի պատմական ճառը, պատրաստակամություն են հայտնում՝ բազմապատկել իրենց աշխատանքային ջանքերը ի բարօրություն հարազատ սոցիալիստական Հայրենիքի, արտահայտելով իրենց անսահման սերն ու նվիրվածությունը հարազատ կոմունիստական պարտիայի նկատմամբ, մեծ առաջնորդ, հայր և ուսուցիչ, ամբողջ աշխարհի խաղաղության դրոշակակիր ընկեր Ստալինի նկատմամբ։

Զգալի աշխատանք է տարվել գործարանի արտադրական կադրեր պատրաստելու և նրանց որակավորումը բարձրացնելու ուղղությամբ։

Գործարանում կազմակերպվել է որակավորման բարձրացման 11 խմբակ, ինժեներա-տեխնիկական աշխատողների որակա-



վորման բարձրացման 3 խմբակ և ստախանովյան 4 դպրոց։

Ամբողջ ուսումնական աշխատանքը սերտորեն կապված է կազմակերպչական-տեխնիկական միջոցառումների պլանի հետ, որի շնորհիվ տեխնիկական ուսուցումը դրական դեր է խաղում պլանի կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և խոտանի նվազեցման գործում։

Գործարանի ստախանովյան դպրոցի սովորողներից Շաքարյանը, Սամոխլովան և Կարպուխինան ուսումն ավարտելուց հետո արտադրանքի թողարկումն ավելացրին 17 տոկոսով և նվազեցրին խոտանը։

Ինժեներ ընկ. Գ. Մայիլյանի ղեկավարած ցեխում գործող արտադրական-տեխնիկական դասընթացներում ուսուցումը հնարավորություն տվեց ընդլայնել ցեխի գործունեության ոլորտը՝ առանց ավելացնելու բանվորների քանակը։

Նոր հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում նախատեսված է. «Բարձրացնել գյուտարար և ռացիոնալիզատոր ինժեներների, տեխնիկների, բանվորների և կոլտնտեսականների մասսայական շարժումը՝ արտադրության տեխնիկական հետագա կատարե-

լագործման և ընդլայնման համար, բազմակողմանի մեքենայացման, աշխատանքի դյուրացման և նրա պայմանների հետագա առողջացման համար»։

«Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվը որոշակի հաջողություններ է ձեռք բերել պարտիայի այդ ցուցումների կատարման համար մղվող պայքարում։ Այս տարի գործարանի ռացիոնալիզատորներն արել են 387 ռացիոնալիզատորական առաջարկություն, մինչդեռ ամբողջ 1951 թվականի ընթացքում արվել էր ընդամենը 143 առաջարկություն։

Այդ առաջարկություններից արդեն ավելի քան 200-ը արմատավորվել են արտադրության մեջ և տարեկան տալիս են 3 միլիոն ռուբլու պայմանական տնտեսում։ Արտադրության ռացիոնալիզատորական շարժումը, նամանավանդ այժմ, ավելի ու ավելի մասսայական է դառնում, ընդգրկելով գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների զգալի մասը։

1952 թվականին գործարանի ռացիոնալիզատորների ակտիվն են կազմում 118 բանվորներ և 28 ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Մենք ձգտում ենք այն բանին, որպեսզի ռացիոնալիզատոր դառնա ամեն մի ստախանովական։ Ստախանովականներ ընկ.



ընկ. Ս. Ղազանչյանը, Գ. Խրլոպյանը, Դ. Աբրամովը, Օ. Արամչյանը և շատ ուրիշներ միաժամանակ ակտիվ ռացիոնալիզատորներ են։

Տեխնոլոգիայի կատարելագործումը, աշխատատարության պակասեցումը՝ դարձել է նրանց աշխատանքային գործունեության մի անբաժանելի մասը։ Այսպես, օրինակ՝ ստախանովական փականագործ ընկ. Ստեփան Ղազանչյանը այս տարի մտցրել է 8 ռացիոնալիզատորական առաջարկություն։ Նա ստեղծել է շաղափների պատրաստման նոր հարմարանք, որն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է 50 տոկոսով։

Խառատ ընկ. Դ. Աբրամովի 7 ռացիոնալիզատորական առաջարկներ օգտագործվում են մամլակներ պատրաստելու ընթացքում։ Մամլակաշինվածքների մշակման պրոցեսի մեքենայացման ուղղությամբ ռացիոնալիզատորական 4 առաջարկ է մտցրել խառատ ընկ. Գևորգ Խրլոպյանը, որոնց շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացվում է 25—30 տոկոսով, հեշտացվում և առողջացվում են բանվորների աշխատանքի պայմանները։

Ցեխի պետ ընկ. Դ. Մելիքյանը և տեխնո-

լոգ ընկ. Օ. Պողոսյանը փոխեցին արտադրանքի ռեկտիֆիկացիայի տեխնոլոգիական սխեման, որով և տնտեսվեց մոտ 200 հազար ռուբլի, բարելավվեց որակը, նվազեցին արտադրության կորուստները և լավացան աշխատանքի պայմանները:

Մի շարք առաջարկներ է մտցրել ինժեներ ընկ. Գ. Ցրեյդլինը: Արտադրության մեջ արմատավորված մամլման ռեժիմը ինտեսիֆիկացնելու վերաբերյալ նրա առաջարկը ստախանովական մամլողներ Հասմիկ Մելքոնյանին, Սոնյա Թևոսյանին և ուրիշներին հնարավորություն տվեց խիստ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը: Եթե առաջ ընկ. Մելքոնյանը հերթափոխության ընթացքում պատրաստում էր 2300 առարկա, ապա այժմ պատրաստում է 4200 առարկա: Մամլող ընկ. Սոնյա Թևոսյանը առաջվա 1200-ի փոխարեն այժմ պատրաստում է 2800 առարկա:

Ընկ. Ցրեյդլինի ռացիոնալիզատորական առաջարկը բանվորուհիներ ընկ. ընկ. Ռոզա Շահբազյանին, Ռոզա Գասպարյանին, Նվարդ Ղազարյանին և ուրիշներին հնարավորություն տվեց խիստ բարձրացնել մշակվող առարկաների թողարկումը՝ 3—4 հազարից հասցնելով 7—8 հազար հատի:



Ռացիոնալիզատորական աշխատանքը օգնում է գործարանի կոլեկտիվին բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և արտադրության կուլտուրան:

Գործարանի աշխատանքի ցուցանիշների բարելավման հիմնական ու վճռական պայմանը հանդիսացան բանվորների մեջ քաղաքական ագիտացիոն աշխատանքների դրվածքի բարելավումը և սոցիալիստական մրցության լայն ծավալումը, մրցության արդյունքների սիստեմատիկ ստուգումն ու ամփոփումը: Գործարանի ագիտատորներ Դ. Մելիքյանը, Գ. Մխիթարյանը, Ս. Ավագյանը, Ա. Մեսրոբյանը, բանվորների մեջ մասսայականացնելով ՍՄԿՊ XIX համագումարի նյութերը, այն կապելով գործարանի, հերթափոխության, ցեխի, բրիգադայի և յուրաքանչյուր աշխատողի կոնկրետ խնդիրների հետ, մոբիլիզացնում են նրանց ուժերը ստանձնած պարտավորությունները ժամանակին և բարձր որակով կատարելու համար, որը տվեց դրական արդյունք: Այս տարի «Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվը երկրորդ եռամսյակի իր աշխատանքի ցուցանիշներով նվաճեց երրորդ տեղը Քիմիական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների համամիութենական սոցիալիստական մրցության մեջ:

Գործարանն ունի բոլոր պայմանները էլ ավելի բարելավելու իր աշխատանքի ցուցանիշները, իջեցնելու ինքնարժեքը, բարելավելու արտադրանքի որակը, զարգացնելու տեխնիկական միտքը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, ցեխերում, հերթափոխություններում արմատավորելու տնտհաշվարկը, էլ ավելի բարելավելու տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։

Խորապես գիտակցելով հինգերորդ հնգամյակի խնդիրների վեհությունը, գործարանի կոլեկտիվը լի է ցանկությամբ անելու ամեն ինչ, որպեսզի պատվով կատարենք ու գերակատարենք ստալինյան հինգերորդ հնգամյակը, կատարենք պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումները, կենսագործենք ընկեր Ստալինի հանճարեղ կանխագծումները։

Բ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

«Պոլիվինիլացետատ» գործարանի դիրեկտոր

---



# ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏ-ԿՈԼԵԿՏԻՎԸ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆՈՒՄ Է ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Երևանի Կոմպրեսորների գործարանի բանվորները բերկրանքով և Սովետական Հայրենիքի համար օրինական հպարտության զգացմունքով են ընդունում պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։

Սովետական մարդիկ նոր հնգամյա պլանը համարում են իրենց հարազատ, կենսական գործը։ Եվ դա հասկանալի է։ Նոր հնգամյակի կատարումը նոր խոշոր առաջընթաց քայլ է մեր երկրի զարգացման ճանապարհին սոցիալիզմից դեպի կոմունիզմ։

Խորապես գիտակցելով նոր հնգամյա պլանի խնդիրների վեհությունը, մեր հայրենիքի աշխատավորները լի են միահամուռ ստեղծագործական ջերմ ցանկությամբ անելու ամեն բան, որպեսզի պատվով կատա-

րեն ու գերակատարեն ստալինյան հինգերորդ հնգամյակը, մեր հայրենիքը դարձնեն էլ ավելի հզոր տերություն, նոր ավանդ մտցնեն դեմոկրատիայի և սոցիալիզմի ամբողջ լագերի ամրապնդման գործում, ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու գործում:

Կոմպրեսորների գործարանի ագիտատորները իրենց առաջ խնդիր են դրել՝ բանվորներին ու ծառայողներին պարզաբանել 19-րդ համագումարի որոշումները, այդ որոշումները դարձնել նրանց սեփականությունը, աշխատավորների ուշադրությունը բևեռել նոր բարձր պարտավորություններ ստանձնելու, ստանձնած պարտավորությունները կատարելու և գերակատարելու վրա:

Պարտիայի 19-րդ համագումարի նյութերը Կոմպրեսորների գործարանի բանվորների մեջ պարզաբանելու ուղղությամբ ագիտացիոն աշխատանք են տանում 20 ագիտատորներ: Դրանց մեջ են քաղաքականապես պատրաստված կոմունիստներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, արտադրության նորարարներ ու առաջավորներ: Գրեթե բոլոր ագիտատորներն ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն:



Կոմպրեսորների գործարանի սկզբնական պարտկազմակերպությունը քաղաքական-մասսայական աշխատանքը ճիշտ զուգակցելով արտադրական պլանների կատարման հետ, ուղղություն է տալիս ագիտատորների աշխատանքին՝ պարտիայի 19-րդ համագումարի նյութերը պարզաբանելու և սոցիալիստական լայն մրցություն կազմակերպելու համար:

Գործարանի ագիտատորները ամեն օր ագիտացիոն զրույց են անցկացնում բանվորների հետ: Ագիտ-զրույցները աշխույժ ու հետաքրքիր են անցնում այն խմբերում, որտեղ ագիտատորներ են ընկ. ընկ. Յու. Ղազարյանը, Ե. Հակոբյանը, Զ. Համբարձումյանը և Ս. Պետրոսյանը: Նրանք ավելի քան 20 զրույց են անցկացրել՝ նվիրված համագումարի նյութերի մասսայականացմանը:

Ագիտատորները չեն սահմանափակվում համագումարի նյութերի սոսկ ծանոթացումով, իրենց զրույցներում նրանք բանվորներին պարզաբանում են, որ ձեռնարկություններում նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների հետագա արմատավորումը, արտադրության էլ ավելի բազմակողմանի մեքենայացումը և էլեկտրիֆիկացումը, աշխատանքի ավելի լավ կազմա-

կերպումը և արտադրական կադրերի որակավորումը կարևորագույն պայման են հանդիսանում ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանը կենսագործելու համար։ Նրանք ընդգրկում են խոտանի և մեքենաների պարապուրդների դեմ պայքարելու, սոցիալիստական գործարար մրցություն ծավալելու հարցերը։

Ստանձնած պարտավորությունների կատարումն ու գերակատարումը, ասում է հավաքման ցեխի ագիտատոր Ղազարյանը, հիմնականն է սոցիալիստական մրցության մեջ, այդ պատճառով էլ մեր ցեխի յուրաքանչյուր բանվորի պատվավոր պարտքն է պայքարել ստանձնած պարտավորությունների կատարման համար։

Ագիտատոր ընկ. Ղազարյանը լինելով հավաքման ցեխի վարպետ, լավ ճանաչում է բոլոր բանվորներին և իր զրույցների ընթացքում լայնորեն օգտագործում է ցեխի կյանքից վերցրած օրինակները։ Ստանձնած պարտավորությունների կատարման ու գերակատարման համար ստեղծագործական լայն մրցություն ծավալելու հարցերը կարմիր թելի նման անցնում են ընկ. Ղազարյանի ամեն օրվա ագիտացիոն զրույցների միջով։



Հավաքման ցեխում քիչ չէ այն բանվորների թիվը, որոնք արտադրության առաջավորներ և նորարարներ են։ Նրանց մեթոդները արտադրության մեջ արմատավորելու հարցերը հատուկ հոգատարության առարկա են հանդիսանում ագիտատոր Ղազարյանի համար։

Վերջերս անցկացրած իր զրույցներից մեկում, որպեսզի ցույց տա, թե որն է սովետական աշխատավորների հայրենասիրական պարտքը հինգերորդ հնգամյա պլանի կատարման ու գերակատարման գործում, ագիտատորը օգտագործեց հենց իր ցեխի այն բրիգադայի օրինակը, որի բրիգադիրն է ընկ. Մ. Առաքելյանը։

Այդ բրիգադան, սոցիալիստական մրցության մեջ մտնելով, պարտավորություններ էր ստանձնել պլանից դուրս հավաքել 15 կոմպրեսոր, սակայն իր խոստումը բրիգադան ոչ միայն կատարեց, այլև գերակատարեց, լրացուցիչ հավաքելով 2 կոմպրեսոր ևս։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավ դրվածքով է բացատրվում այն, որ 1952 թվականի անցած 9 ամսում, 1951 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աշխատանքի արտադրողակա-

*նությունն աճել է 23 տոկոսով, ընթացիկ տարվա 9,5 ամսում 25 տոկոսով շատ կոմպրեսոր է արտադրվել, քան անցյալ տարի նույն ժամանակամիջոցում։ Գործարանը ՌԿ—30 տիպի կոմպրեսորների թողարկման հոկտեմբեր ամսվա պլանը կատարեց հոկտեմբերի 25-ին 107 տոկոսով։*

*Պարտիայի 19-րդ համագումարի որոշումները և ընկեր Ստալինի պատմական ճառը քաղաքական և աշխատանքային չտեսնված ակտիվություն են առաջ բերել Կոմպրեսորների գործարանում։*

*Գործարանի տասնյակ բանվորներ այժմ օրական կատարում են մեկ ու կեսից երկու արտադրական նորմա։ Հավաքման ցեխի երիտասարդ բանվոր Վ. Տրիֆանովը, որը պարտավորություն էր ստանձնել իր ամսական պլանը կատարել 150 տոկոսով, համագումարի օրերին և այժմ արտադրական պլանը կատարում է 216 տոկոսով, բանվոր Ա. Բախչյանը իր արտադրական պլանը կատարում է 280 տոկոսով։ Նման առաջավորների թիվը գործարանում տասնյակների է հասնում։*

*Այժմ գործարանի ցեխերում և բրիգադաներում սոցիալիստական լայն մրցություն է ծավալել հինգերորդ հնգամյա պլանի կա-*



*տարման ու գերակատարման համար, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 35-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու համար։*

*Սոցիալիստական մրցության մեջ մտնելով փոքր հիդրոտուրբինների գործարանի հետ, Կոմպրեսորների գործարանը պարտավորություն է ստանձնել ժամկետից շուտ կատարել տարեկան արտադրական պլանը և պլանից ավելի երկրին տալ մի քանի տասնյակ կոմպրեսոր։ Գործարանում եռում է ստեղծագործական ստախանովյան աշխատանքը՝ ստանձնած այդ պարտավորությունը պատվով կատարելու համար։*

*Գործարանի ագիտ-կոլեկտիվը բանվորների մեջ մասսայականացնելով և արմատավորելով առաջավորների փորձը, մոբիլիզացնում է նրանց՝ կոլեկտիվ ստախանովյան աշխատանք կատարելու, պայքարելու Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների անթերի կենսագործման համար։*

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

---

# ԻՆՉՊԵՍ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ

Սովետական ժողովուրդը մեծ խանդավառությամբ ընդունեց պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։

Որպես տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության ծրագիր, հինգերորդ հնգամյա պլանը ամբողջ աշխարհի առջև մեկ անգամ ևս ցուցադրում է սոցիալիստական հասարակարգի հզոր կենարար ուժը և մի նոր խոշոր առաջընթաց քայլ է հանդիսանում սոցիալիզմից դեպի կոմունիզմ անցման ճանապարհին։

Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները զուգադիպեցին Ի. Վ. Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատության հրապարակմանը, ուր բացառիկ հստակությամբ խոր գիտական վերլուծության են ենթարկված սոցիալիզմի տնտեսական օրենքները և կանխագծված են կոմունիս-



տական հասարակության կառուցման հեռանկարները։

Մեր ժամանակաշրջանի այդ պատմական փաստաթղթերը վկայում են այն վիթխարի նվաճումների մասին, որ կոմունիստական պարտիայի և մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի գլխավորությամբ ձեռք են բերել սովետական մարդիկ՝ ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։

Օրերս հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1952 թվականի 3-րդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, որտեղ արտացոլված է ստալինյան հինգերորդ հնգամյա պլանում նախատեսված մեծ առաջադրանքների պրակտիկ իրականացումը։

Պարտիայի կողմից առաջադրված հոյակապ խնդիրները աննախընթաց քաղաքական և աշխատանքային վերելք են առեղծել անծայրածիր Սովետական երկրի բոլոր մասերում։ Աշխատավորությունը նորանոր սխրագործություններով է նշանավորում իր անսահման նվիրվածությունը Լենինի—Ստալինի մեծ գործին։

Հինգերորդ հնգամյա պլանի իրականացումը մեծագույն չափով կախված է միլիոնավոր աշխատավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնությունից: «Արտադրական պլանը,— սովորեցնում է ընկեր Ստալինը,— միլիոնավոր մարդկանց կենդանի ու պրակտիկ գործունեությունն է: Մեր արտադրական պլանի իրական լինելը՝ դա նոր կյանք ստեղծող միլիոնավոր աշխատավորներն են: Մեր ծրագրի իրական լինելը՝ դա կենդանի մարդիկ են, այդ մենք ենք ձեզ հետ միասին, աշխատելու մեր կամքը, նոր ձևով աշխատելու մեր պատրաստակամությունը, պլանը կատարելու մեր վճռականությունը»:

Ընկեր Ստալինի այս խոսքերը սպառիչ կերպով բնութագրում են այն խոշորագույն նշանակությունը, որ ձեռք է բերում քաղաքական ագիտացիան՝ սովետական ժողովրդի հարաճուն ակտիվությունը գլխավորելու և այն հմտորեն օգտագործելու ասպարեզում:

Խոսելով հնգամյա պլանի խնդիրների մասին, ագիտատորը պետք է իր ունկնդիրներին պարբերաբար պատմի այն մեծ աշխատանքային սխրագործությունների մասին, որ կատարում են Մոսկվայի և Լենինգրադի մեքենաշինարարները, Հարավի և Ուրալի մե-



տաղագործները, Դոնբասի և Կարականդայի ածխագործները, Բաքվի և Բաշկիրիայի նավթագործները, Ուկրաինայի ու Վրաստանի կոլտնտեսականները: Սակայն ագիտացիան չի հասնի իր նպատակին, եթե ագիտատորը սահմանափակվի միայն հնգամյա պլանում առաջադրված ընդհանուր խնդիրներով, եթե այն սերտորեն չկապի գործարանի, կոլտնտեսության, ցեխի, բրիգադայի կոնկրետ խնդիրների հետ: Ագիտատորը պետք է ամեն կերպ հասնի նրան, որ բանվորները իրենց ամենօրյա գործի մեջ տեսնեն ամբողջ հնգամյա պլանի խնդիրների կենսագործումը: Այլ խոսքով՝ ամեն մեկի անձնական աշխատանքը պետք է օրգանապես ձուլվի համաժողովրդական աշխատանքի ընդհանուր հոսանքի մեջ: Իսկ դրա համար անհրաժեշտ է, որպեսզի ագիտատորը խորանա արդյունաբերության առանձնահատկությունների մեջ, լավ գիտենա իրեն վստահված տեղամասի կոնկրետ խնդիրն ու մարդկանց, որոնք ներգրավվել են սոցիալիստական մրցության մեջ:

Հանրահայտ է, որ կոմունիզմի հաղթանակի համար ամենագլխավոր պայմաններից մեկը հանդիսանում է աշխատանքի արտադրողականության աճը: Հինգերորդ հնգամյակում ամբողջ արդյունաբերական արտադրանքի աճի մոտ երեք քառորդը պետք է

ստացվի աշխատանքի արտադրողականության հաշվին։ Նշանակում է, ագիտատորները իրենց պրակտիկ աշխատանքում պետք է լուրջ ուշադրություն դարձնեն այդ հարցի վրա։ Մինչդեռ քիչ չեն դեպքերը, երբ ագիտատորները տարվում են միայն առանձին նորարարների ու ստախանովականների, գյուղատնտեսության առաջավորների անհատական ռեկորդներով ու ցուցանիշներով և մոռացության մատնում աշխատանքի արտադրողականության բարձրացման համար առկա մասսայական շարժումը։

Մոսկվա քաղաքի արտադրական ձեռնարկությունների պարտիական աշխատողների խորհրդակցությունում արտասանած իր ճառում ընկ. Մ. Ի. Կալինինը ասաց «...Ցավը նրանում է, որ մենք մոռանում ենք միջին շարքային բանվորին... եթե մեզ հաջողվի բարձրացնել բոլոր բանվորների, շեշտում եմ բոլոր բանվորների աշխատանքի արտադրողականությունը միայն 10 տոկոսով, ապա ինչպիսի մեծ օգուտ կտա այդ, արդյունաբերական արտադրանքի ինչպիսի աճ կտար այդ։ Սակայն դրան հասնել ավելի դժվար է, քան առանձին ռեկորդներ տալը... Շարքայինների աշխատանքի արտադրողականությունը ձգել ինչ-որ 10 տոկոսի՝ հսկայական գործ է, որի



համար էլ պետք է ամենօրյա ագիտացիա տանել»։

Քաղաքական ագիտացիան առավել ներգործոն ու նպատակասլաց է դառնում այն ժամանակ. երբ նա ակտիվ է, հարձակողական, երբ նա հրաժարվում է պասսիվ-հայեցողական բնույթից։ Ագիտատորը միշտ պետք է հիշի, որ իր զրույցի նպատակն է ունկնդիրներին պարզաբանել սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության կենսական հարցերը։

Այդ տեսակետից էլ՝ նոր հնգամյակի նյութերը մասսայականացնելիս ագիտատորը չպետք է բավարարվի պլանում նախատեսված թվերի չոր ու անկենդան վերարտադրմամբ։ Այդպիսի ագիտացիան երբեք չի կարող իր նպատակին ծառայել։ Ընդհակառակը, հենվելով հնգամյակի թվերի վրա, ագիտատորը պետք է քաղաքական ընդհանրացումներ կատարի, օգտագործի առիթը՝ կապիտալիզմի էությունը մերկացնելու համար։ Սովետական Միության ժողովրդական տնտեսության և կուլտուրայի անշեղ վերելքի մասին խոսելիս, ագիտատորը պետք է համոզիչ կերպով ցույց տա սովետական հասարակարգի անվիճելի գերազանցությունը բուրժուական հասարակարգի նկատմամբ։

Ինչպե՞ս կարելի է, օրինակ, չօգտագործել

այն փաստը, որ Սովետական Միությունում արդյունաբերական արտադրության մակարդակը 1929 թ. համեմատությամբ, 1951 թ. բարձրացել է 13 անգամ, մինչդեռ Ամերիկայի Միացյալ Նահանգներում միայն 2 անգամ, այն էլ՝ սպառազինության խելացնոր մրցավազքի հետևանքով։

Զրույցի ընթացքում ագիտատորը պետք է ցայտուն օրինակներով ցույց տա, թե ստալինյան հնգամյակների ընթացքում ինչպիսի հսկայական նվաճումների են հասել սովետական ռեսպուբլիկաները կապիտալիստական երկրների համեմատությամբ։ Բերել թեկուզ հենց այն փաստը, որ Միջին Ասիական սովետական ռեսպուբլիկաները, որ ունեն 17 միլիոն բնակչություն, այժմ արտադրում են էլեկտրաէներգիա երեք անգամ ավելի, քան Թուրքիան, Իրանը, Պակիստանը, Եգիպտոսը, Իրաքը, Սիրիան և Աղվանստանը՝ միասին վերցրած, որոնց բնակչությունը կազմում է 156 միլիոն։ Այդ դեռ 1951 թվականին էր։ Իսկ եթե դրան ավելացնենք, որ էլեկտրաէներգիայի արտադրությունը 1955 թ., 1950 թվականի համեմատությամբ, կաճի մոտ 80 տոկոսով, ապա առավել ակնհայտ կդառնա այն վիթխարի առաջընթացը, որ ապրում են սովետական ծաղկուն ռեսպուբլիկաները՝ ինչպես Արևմտյան Եվրոպա-



յի, այնպես էլ Արևելքի տնտեսապես հետամնաց երկրների նկատմամբ։

Նշանակում է, խոսելով մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման կարևորագույն պայման հանդիսացող էլեկտրաէներգիայի արտադրության մասին, ագիտատորը պետք է ոչ միայն պատմի Կույբիշևյան, Ստալինգրադյան, Կախովկայի, Կամայի, Գորկու, Մինգեչաուրի, Ձերբջաթիի և նոր հնգամյակում կառուցվող մյուս խոշոր հիդրոէլեկտրակայանների նշանակության մասին, այլև նրա հիման վրա հանգամանորեն ցույց տա Սովետական Միության էկոնոմիկայի հսկայական զարգացումը և, ի հակադրություն դրա՝ կապիտալիստական սիստեմի էկոնոմիկայի անդառնալի անկումը։ Զրույցի այդպիսի բնույթը քաղաքական տեսակետից ավելի լայն նշանակություն կտա ագիտացիային և ավելի գործոն հետևանքներ կունենա աշխատավորության սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու ուղղությամբ։

Ստալինյան հինգերորդ հնգամյակում մեծ տեղ է հատկացվում սովետական ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի բարձրացմանը։ Այդ նշանակում է, որ մեր պարտիայի և սովետական պետության համար չկան այլ

շահեր, քան ժողովրդի շահերը: Ագիտատոր-ները պետք է տեղից վերցրած կոնկրետ օրի-նակներով ցույց տան ունկնդիրներին, թե ինչպես է բարելավվել բանվորների, կոլ-տնտեսականների, ինտելիգենցիայի նյութա-կան վիճակն ու կուլտուրական կյանքը: Միաժամանակ, պետք է ցույց տալ, թե ինչ-պիսի զրկանքներ է կրում կապիտալի լծի տակ տառապող աշխատավորությունը:

«Հնգամյա պլանում նախատեսված խնդիր-ները,— ասված է 19-րդ համագումարի դի-րեկտիվներում,— մեծ պահանջներ են առա-ջադրում պարտիական, սովետական, տըն-տեսական, պրոֆմիութենական, կոմերիտա-կան կազմակերպություններին և պարտա-վորեցնում նրանց մոբիլիզացնել աշխա-տավոր լայն մասսաներին՝ նոր հնգամյա պլանի կատարման ու գերակատարման ուղ-ղությամբ, ծավալելով մեր կազմակերպու-թյունների աշխատանքում գոյություն ունե-ցող թերությունների լայն քննադատություն՝ այդ թերությունները ամենաարագ կերպով վերացնելու նպատակով»:

Ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ ճշտորեն կատարել պարտիայի 19-րդ համա-գումարի այդ պահանջը՝ Ստալինյան նոր հնգամյակը հաջողությամբ կենսագործելու համար:

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՄԵԾ ԾՐԱԳԻՐ ԵՆ

1. Սովետական Միության Կոմունիստական պար-տիայի 19-րդ համագումարի որոշումները, համա-գումարի եզրափակիչ նիստում ընկեր Ի. Վ. Ստալինի պատմական ճառը հանդիսանում են պայքարի և հաղթանակների մեծ ծրագիր:

2. Սովետական Միության Կոմունիստական պար-տիայի 19-րդ համագումարի ընդունած որոշումնե-րը պարտիայի, ամբողջ Սովետական ժողովրդի առջև բացում են մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ հեռանկարներ:

3. ՍՍՌՄ զարգացման 1951—55 թվականների հինգերորդ հնգամյա պլանի կատարումը նոր՝ խոշոր քայլ կհանդիսանա սոցիալիզմից դեպի կոմունիզմ զարգացման ճանապարհին:

4. Սովետական ժողովրդի ստեղծագործական կեն-դանի գործունեությունը հզոր ուժն է մեր մեծ պլանների կատարման համար մղվող պայքարում:

5. Ձեռնարկություններում նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների հետագա արմատավորումը, արտադրության բազմակողմանի մեքենայացումը և էլեկտրիֆիկացումը, աշխատանքի ավելի լավ կազմակերպումը և արտադրական կադրերի որակավորումը հանդիսանում են նոր հնգամյակի խնդիրների կենսագործման կարևորագույն պայմանները։

6. Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի որոշումները և համագումարի եզրափակիչ նիստում ընկեր Ի. Վ. Ստալինի պատմական ճառը ազատ ժողովուրդների բոլոր ուժերը մոբիլիզացնում են՝ պայքարելու պայծառ և բերկրալից կյանքի կառուցման նոր հաջողությունների համար, պայքարելու ամբողջ աշխարհի խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու համար։

7. Ընկեր Ի. Վ. Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատությունը սովետական ժողովրդին սովորեցնում և ցույց է տալիս սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ուղիները։

8. Սավալենք գործարար լայն սոցիալիստական մրցություն արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների մեջ՝ անթերի և ժամանակին կենսագործելու Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումները։



II

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 35-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը Կոմունիստական պարտիայի կազմակերպիչներ և առաջնորդներ։

2. Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի և նրա առաջնորդներ Վ. Ի. Լենինի, Ի. Վ. Ստալինի ղեկավարող և կազմակերպող դերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում։

3. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկային հասարակության պատմության մեջ նոր էպոխայի սկիզբն է։

4. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը— աշխարհում առաջին Սոցիալիստական պետության ստեղծողներն են։

5. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 35-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում նոր՝ պատմական նշանակություն ունեցող նվաճումներով։

6. Սովետական Հայաստանի հաջողությունները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի կենսագործման գործում։

7. Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները կապիտալիստական սիստեմի նկատմամբ։

9. *Ծավալել գործարար սոցիալիստական մրցումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 35-րդ տարեդարձը դիմավորելու պլանների կատարումով և գերակատարումով։*

## Գ Ր Ա Կ Ա Ն Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն


**Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին.**— Համառոտ կենսագրություն, *երկրորդ ուղղված և լրացված հրատարակությամբ։ Երևան 1950 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում. *Հայպետհրատ. 1952 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարում. *«Ագիտատորի բլոկնոտ» № 20. հոկտեմբեր 1952 թ.։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի 19-րդ համագումարին. *«Ագիտատորի բլոկնոտ» № 19 Հոկտեմբեր 1952 թ.։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Ներածական ճառ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում. *(«Ս. Հ.» 1952 թ., հոկտեմբերի 6-ի համարը)։*

Լ. Պ. ԲԵՐԻԱ.— Ճառ՝ ՍՄԿՊ 19-րդ համագումարում *(«Ս. Հ.» 1952 թ., հոկտեմբերի 10-ի համարը)։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ՝ ՍՄԿՊ 19-րդ համա-





գումարում. *(«Ս. Հ.» 1952 թ. հոկտեմբերի 14-ի համարը)։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.— Ճառ՝ ՍՄԿՊ 19-րդ համագումարում. *(«Ս. Հ.» 1952 թ., հոկտեմբերի 14-ի համարը)։*

ՍՄԿՊ 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ.— *(«Ս. Հ.» 15-ը հոկտեմբերի 1952 թ.)։*

Գր. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կոմունիստական Պարտիայի 16-րդ համագումարում Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին.— *«Ագիտատորի բլոկնոտ» № 18. հոկտեմբեր, 1952 թ.։*

*«Պրավդայի» հոկտեմբերի 16-ի առաջնորդողը՝ «Պայքարի ու հաղթանակների մեծ ծրագիրը» («Ս. Հ.» 1952 թ. հոկտեմբերի 11-ի համարը)։*


———



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

*Ի. ՍՏԱԼԻՆ.*— Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում: *102 էջ, տիրաժ 150000, գինը 1 ռ. 10 կոպ.:*

*Գ. ՄԱԼԵՆԿՈՎ.*— Հաշվետու զեկուցում պարտիայի XIX համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *135 էջ, տիրաժ 70.000, գինը 1 ռ. 40 կոպ.:*

*Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.*— Հաշվետու-զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ XVI համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *99 էջ, տիրաժ 20.000, գինը 1 ռ.:*

Ի. ԻՇԱԿՈՎ.— «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և աշխարհի բաժանումը երկու սիստեմների» *(«ՍՍՌՄ արտաքին քաղաքականությունը և ժամանակակից միջազգային հարաբերությունները ցիկլի 1-ին դասախոսությունը): ՀՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակություն: 52 էջ, գինը 1 ռ.:*

*Ն. Ն. ՄԻԽԱՅԼՈՎ.*— Հայրենիքի քարտեզի առաջ: *459 էջ, տիրաժ 5000, գինը 8 ռ. 95 կոպ.:*

ՄՈՒԽԹԱՐ ԱՈՒԵԶՈՎ.— Աբայ: *721 էջ, տիրաժ 5000, գինը 17 ռ. 55 կոպ.:*

---

Պտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

*ՎՖ 07349 Պատվեր 893 Տիրաժ 10.000*

---

*Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի փ. № 8*

